Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն— Երևան ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, Հեռախոս՝ 2—52—78։



# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԳԼԽԱՎՈՐ ՆՊԱՏԱԿԸ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՆԸՆԴՀԱՏ ԲԱՐՁՐԱՑՈՒՄՆ Է

Սովետական հասարակության ղեկավարող և ուղղություն տվող ուժը հանդիսանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիան, որի ամբողջ պատմությունը և բազմաբովանդակ գործունեությունը ժողովրդին ծառայելու մի վառ օրինակ է։

Կոմունիստական պարտիան մեծագույն հաջողությամբ և հաստատակամությամբ է լուծում իր գլխավոր խնդիրը՝ ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարելավումը և կուլտուրական մակարդակի բարձրացումը։ Սովետական մարդու բարեկեցությունը, սովետական ժողովրդի ծաղկումը Կոմունիստական պարտիայի գործունեության անխախտ օրենքն է։ Նրա բոլոր որոշումները, պլաններն ու նախագծումները տոգորված են ժողովրդի բարեկեցության նկատմամբ անսահման հոգատարության ոգով։ Կոմունիստական պարտիան չունի ավելի բարձր շահ, քան ժողովրդի շահը,

նրա համար բարեկեցիկ և երջանիկ կյանքի ապահովումը։ Մեր երկրում ամեն ինչ արվում է աշխատավոր մարդու համար, նրա բարօրության և երջանկության համար։ Հանուն սովետական մարդկանց լավ ու գեղեցիկ կյանքի հիմնվում են նոր էլեկտրակայաններ ու գործարաններ,- իրագործվում է արտադրության մեքենայացում և ավտոմատացում, ստեղծվում են գիտական նոր հիմնարկներ ու ուսումնական հաստատություններ, կառուցվում են նոր բնակելի տներ, հիվանդանոցներ ու մանկական հիմնարկներ։

Հենվելով սոցիալիստական արտադրության անշեղ վերելքի վրա պարտիան ու կառավարությունը վերջին տարիներս իրագործեցին մի շարք խոշոր միջոցառումներ ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղղությամբ։ Դրա շնորհիվ զգալիորեն աճեցին բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը և կոլտնտեսականների եկամուտները, ավելացավ լայն օգտագործման ապրանքների թողարկումը, աճեց ժողովրդական սպառումը, միլիոնավոր ընտանիքներ ստացան նոր բնակարաններ։

Սովետական ժողովրդի բարօրության նրկատմամբ Կոմունիստական պարտիայի և



Սովետական կառավարության անդուլ հոգատարության նոր վառ արտահայտությունը հանդիսացավ ՍՄԿՊ XXI համագումարի կողմից հաստատված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների յոթնամյա պլանը։

Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հիմնական ցուցանիշը և ռեալ բազան հանդիսանում է ազգային եկամուտը։ Որքան մեծ է ազգային եկամուտը, այնքան բարձր է սովետական մարդկանց բարեկեցությունը։ 1965 թվականին ՍՍՌՄ ազգային եկամուտը, 1958 թվականի համեմատությամբ, կավելանա 62—65 տոկոսով և 6 անգամ կգերազանցի 1940 թվականի մակարդակը։ Նույն ժամանակամիջոցում ժողովրդական սպառման ֆոնդը կավելանա 60—63 տոկոսով։

Յոթնամյակի ընթացքում բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները կաճեն 40 տոկոսով, իսկ կոլտնտեսականներինը՝ առնվազն 40 տոկոսով։ Դրա հետ միասին զգալիորեն կբարձրանա ցածր և միջին վարձատրություն ունեցող բանվորների ու ծառայողների աշխատավարձը։ Այսպես, օրինակ, նախատեսվում է 1965 թվականին

բոլոր ճյուղերի բանվորների և ծառայողների նվազագույն աշխատավարձը 1959 թվականի ամսական 270—350 ռուբլուց հասցնել 500—600 ռուբլու, որոշ չափով բարձրացնելով նաև միջին վարձատրություն ստացող բանվորների և ծառայողների աշխատավարձի դրույքները։ Դրա հետ միասին զգալիորեն կաճեն կենսաթոշակների նվազագույն չափերը։ 1960 թվականին ծերության կենսաթոշակների նվազագույն չափերը քաղաքում ներկայումս եղած 300 ռուբլուց կհասնեն 450—500 ռուբլու։ Համապատասխանաբար կբարձրանան նաև կենսաթոշակների նվազագույն չափերը գյուղական վայրերում։

Ռեալ աշխատավարձի բարձրացման հետ միասին յոթնամյակում նախատեսված է նաև աշխատանքային օրվա հետագա կրճատում։ 1960 թվականին կավարտվի բանվորների և ծառայողների փոխադրումը 7-ժամյա աշխատօրվա, իսկ ածխային և լեռնահանքային արդյունաբերության մեջ ստորերկրյա աշխատանքներ կատարող առաջատար պրոֆեսիաների բանվորների փոխադրումը 6-ժամյա աշխատօրվա։ Այնուհետև 1964 թվականից կսկսվի բանվորների և ծառայողների աստիճանական անցումը



35—30-ժամյա աշխատանքային շաբաթվա։ Նախատեսվում է 1966—1968 թվականներին մտցնել հնգօրյա աշխատանքային շաբաթ, այսինքն սահմանել շաբաթական երկու հանգստյան օր։

Աշխատավորների բարեկեցության նկատմամբ պարտիայի և կառավարության հոգատարությունը այս գործում դրսևորվում է նաև նրանով, որ կրճատ աշխատօրվա անցնելը և շաբաթվա մեջ աշխատօրերի թվի նվազեցումը կկատարվի առանց աշխատավարձը նվազեցնելու։

Աշխատավորների եկամուտները կաճեն նաև նրանց վրա կատարվելիք հասարակական ծախսումների աճի շնորհիվ։ Ինչպես հայտնի է, մեր երկրում ուսումը և բժշկական սպասարկումը ձրի են, աշխատավորները ձրի կամ զեղչված գներով ձեռք են բերում սանատորիաների, հանգստյան տների և պիոներական ճամբարների ուղեգրեր, միլիոնավոր բանվորներ ու ծառայողներ պետական սոցիալական ապահովագրության գծով ստանում են նպաստներ, պետությունը վիթխարի գումարներ է հատկացնում պետական կենսաթոշակների, բանվորներին ու ծառայողներին արձակուրդի ժամանակ աշխատավարձ վճարելու, բազմա-

զավակ և միայնակ մայրերին նպաստներ տալու և ուրիշ վճարումների ու նպաստների համար։ Այս բոլոր նպատակների համար 1965 թվականին կծախսվի 360 միլիարդ ռուբլի, 1958 թվականի 215 միլիարդ ռուբլու դիմաց։

Սովետական ժողովրդի նկատմամբ անդուլ հոգատարության վառ արտահայտություն են հանդիսանում պարտիայի և կառավարության միջոցառումները երկրում բնակարանային պակասը վերացնելու ուղղությամբ։ Բնակարանային շինարարությունը հատկապես արագ թափով կզարգանա ընթացիկ յոթնամյակում։ Նախատեսվում է 1959—1965 թվականներին քաղաքներում և բանվորական ավաններում կառուցել 650—660 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, կամ մոտ 15 միլիոն բնակարան, որոնցում կարող է բնակվել մոտ 60 միլիոն մարդ, իսկ գյուղական վայրերում կկառուցվի մոտ 7 միլիոն բնակելի տուն։ Նշանակում է յոթնամյակում ամեն օր միջին հաշվով շարք կմտնի քաղաքներում՝ 5870 բնակարան, իսկ գյուղերում՝ 2740 տուն։ Յոթը տարիների ընթացքում մեր երկրում 22 միլիոն ընտանիք նոր բնակարան կստանա։



1965 թվականի վերջին երկրի բնակելի ֆոնդը կաճի 1,6 անգամ։ Այդպիսով, միայն ընթացիկ յոթնամյակում ավելի շատ բնակելի տարածություն կկառուցվի, քան սովետական իշխանության ամբողջ նախորդ տարիներին մինչև յոթնամյակը։ Միայն այս տարի քաղաքներում և բանավաններում կկառուցվի ավելի քան 80 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ 1960 թվականին՝ 101 միլիոն քառակուսի մետր։ Դրա հետ միասին պետք է նկատի առնել, որ մեր երկրում գոյություն ունի աշխարհում ամենացածր վարձը բնակարանի համար։ Այսպես, օրինակ, եթե ԱՄՆ-ում բնակարանի համար վճարվում է աշխատավարձի 25—50 տոկոսը, ապա մեր երկրում բնակարանային վարձը կոմունալ սպասարկումների դիմաց վճարումների հետ միասին կազմում է ընտանիքի բյուջեի 4—5 տոկոսը։

ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներով նախատեսվում է առաջիկայում վերացնել բնակչությունից գանձվող հարկերը։ Ամբողջ սովետական ժողովուրդը ջերմորեն կընդունի պետությունների պատմության մեջ դեռևս չտեսնված այդ միջոցառման կենսագործումը։ Հարկերի վերացումը ՍՍՌՄ-ում մեկ անգամ ևս ցույց կտա սոցիալիզմի վիթխարի

առավելությունները կապիտալիզմի հանդեպ և կհանդիսանա ժողովրդի բարօրության նկատմամբ պարտիայի ու կառավարության անդուլ հոգատարության նոր վառ ցուցադրում։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման, եկամուտների աճի, արդյունաբերական ապրանքների ու գյուղատնտեսական մթերքների արտադրության զգալի ավելացման շնորհիվ մեծացել է և առաջիկա յոթնամյակում ավելի կմեծանա բնակչության պահանջարկը սպառման ապրանքների նկատմամբ։ Այսպես, օրինակ, պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալը 1959 թվականի առաջին կիսամյակում հասավ 338,3 միլիարդ ռուբլու, կամ ավելացավ 1958 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ համադրելի գներով 9 տոկոսով։ Յոթնամյա պլանով նախատեսվում է, որ պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը կաճի մոտավորապես 62 տոկոսով (համադրելի գներով)։ Յոթնամյակի ընթացքում սննդի արդյունաբերության համախառն արտադրանքը կաճի 1,7 անգամ, որը հնարավորություն կտա բնակչության պահանջ-



մունքները լրիվին բավարարել հացեղենի, ձկնեղենի, կաթի, բուսական յուղի, շաքարի, կարտոֆիլի և բանջարեղենի գծով։ Թեթև արդյունաբերության արտադրանքը յոթնամյակում կաճի 1,5 անգամ, որով վիթխարի քայլ կարվի լայն սպառման առարկաների գծով բնակչության պահանջմունքները լրիվին բավարարելու ուղղությամբ։

Յոթնամյա պլանի կատարումով մեր երկրում բնակչության մեկ շնչին ավելի շատ արդյունաբերական ապրանքներ կարտադրվեն, քան Եվրոպայի առավել զարգացած կապիտալիստական երկրներում։ Արտադրանքի մի քանի կարևորագույն տեսակների արտադրության գծով ՍՍՌՄ-ը կանցնի, իսկ մյուս ապրանքների գծով կմոտենա ԱՄՆ-ի ներկա մակարդակին, իսկ գյուղատնտեսության կարևորագույն մթերքների արտադրությամբ ամբողջությամբ վերցրած և բնակչության մեկ շնչի հաշվով կգերազանցի ԱՄՆ-ի ներկա մակարդակը։

Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում սովետական մարդու առողջության պահպանման նկատմամբ։ Մեր երկրում ստեղծվել է բժշկական հիմնարկների լայն ցանց և պատ-

րաստվել բժշկական աշխատողների մի վիթխարի բանակ։ Ընթացիկ յոթնամյակում նոր շինարարության հաշվին հիվանդանոցներում տեղերի թիվը կավելանա կրկնակի չափով, իսկ մանկամսուրներում՝ երկուս ու կես անգամ։

Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաջողությամբ կկատարի պարտիայի մշակած մեծ նախագծումները։ Դրա լավագույն ապացույցը յոթնամյակի առաջին տարվա՝ 1959 թվականի պլանների հաջող կատարումն է։ Մեր ժողովուրդը լավ է սկսել յոթնամյակը, մեր գործերը լավ են գնում։ 1959 թվականի 9 ամսվա պլանը կատարվեց 104 տոկոսով և գերազանցեց 1958 թվականի նույն ժամանակաշրջանի արտադրանքը 12 տոկոսով։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ 1959 թվականի վերջին մեզանում արդյունաբերական համախառն արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, կաճի մոտ 40 անգամ։ Կանցնի ևս 10—12 տարի և մեր Հայրենիքը աշխարհում առաջին տեղը դուրս կգա բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով։ Սովետական Միությունը կդառնա աշխարհում առաջին երկիրը



ժողովրդի նյութական կյանքի ամենաբարձր մակարդակով, ամենակարճ աշխատօրով և ամենակարճ աշխատանքային շաբաթով։

Հանդես գալով Միավորված Ազգերի կազմակերպության Գլխավոր Ասամբլեայում ընկեր Ն. Ս. Խրուշչովը ասաց,— «Մեր ներքին քաղաքականության միակ նպատակն էլ հենց այն է, որպեսզի ստեղծենք մարդկության լավագույն իդեալներին արժանի կյանք։ Մեր յոթնամյա պլանը տոգորված է խաղաղասիրության ոգով, հոգատարությամբ՝ ժողովրդի բարօրության ու երջանկության նկատմամբ»։

Այդպիսի հոգատարությամբ են ներծծված նաև ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի վերջերս ընդունած որոշումները հասարակական սննդի հետագա զարգացման և բարելավման, բնակչության կենցաղային սպասարկման, կրճատ աշխատօրվա անցումն ավարտելու և բանվորների ու ծառայողների աշխատավարձի կարգավորման ժամկետների, կուլտուր-կենցաղային և տնտեսական գործածության ապրանքների արտադրության զարգացման և ասորտիմենտի ընդլայնման մասին և այլն։ Այս բոլոր որոշումների նպատակն է ավելի լավ

պայմաններ ստեղծել սովետական մարդկանց ուրախ ու երջանիկ կյանքի համար։

Մեր երկիրը թևակոխել է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, երբ գործնականում ստեղծվում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան։ Այս ժամանակաշրջանում է՛լ ավելի է մեծանում Կոմունիստական պարտիայի կազմակերպչական և դաստիարակչական դերը։ Պարտիայի, որպես իր իմաստուն և փորձված առաջնորդի ետևից հաստատորեն ընթանում է ամբողջ սովետական ժողովուրդը։ Սովետական մարդիկ անսահմանորեն հավատում են իրենց հարազատ պարտիային և միահամուռ կերպով պաշտպանում են նրա քաղաքականությունը։ Նրանք բարձր են գնահատում պարտիայի հերոսական աշխատանքը, նրա անձնվեր պայքարը ժողովրդի կենսական շահերի համար, կոմունիզմի լիակատար հաղթանակի, խաղաղության ամրապնդման համար։

Սովետական ժողովուրդը պատրաստվում է նոր նվաճումներով դիմավորելու ՍՄԿՊ Կենտկոմի առաջիկա պլենումը, որը քննարկելու է գյուղատնտեսության հետագա զարգացման կարևորագույն խնդիրները։ Պարտիայի Կենտկոմի հերթական պլենումի



գումարումը գյուղատնտեսության զարգացման հարցերի քննարկման համար ցույց է տալիս, թե պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեն ինչպիսի հաստատակամությամբ է պայքարում ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների հետևողական իրականացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման համար։ Անկասկած պարտիայի առաջիկա պլենումի որոշումները մեծ դեր կխաղան գյուղատնտեսության հետագա զարգացման գործում և կարժանանան սովետական մարդկանց միահամուռ հավանությանը։

Սովետական ժողովուրդը այժմ միաձույլ կերպով համախմբված է իր հարազատ պարտիայի շուրջը, քան երբևէ։ Նա վստահ է, որ Կոմունիստական պարտիան մեր երկիրը կհասցնի ամենալավ, ամենաարդարացի հասարակարգի՝ կոմունիզմի հաղթանակին։

---

# ՍՍՌՄ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ

Հ. ՄԵՍՐՈԲՅԱՆ
Դոցենտ

Ամեն տարի դեկտեմբերի 5-ին մեր երկրի աշխատավորները տոնում են ՍՍՌՄ Կոնստիտուցիայի օրը։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան՝ Սովետական Սոցիալիստական պետության Հիմնական Օրենքն է, որը օրենսդրականորեն ամրապնդում է նրա հասարակական և պետական կառուցվածքը, պետական օրգանների կազմակերպման սիստեմը ու գործունեության սկզբունքները, քաղաքացիների հիմնական իրավունքներն ու պարտականությունները և ընտրական սիստեմը։ Նա արտացոլում է աշխարհում առաջին սոցիալիստական պետության շինարարության փորձը, սովետական ժողովրդի պատմական նվաճումները տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո Համառուսաստանյան Սովետների 2-րդ



համագումարի կողմից հռչակվեցին լենինյան անմահ դեկրետները՝ հաշտության և հողի մասին, «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», «Աշխատավոր ու շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիան» և այլն, որոնք հետագայում ամբողջությամբ իրենց արտացոլումը գտան ՌՍՖՍՌ 1918 թվականի Կոնստիտուցիայում, որն ընդունվեց Համառուսաստանյան Սովետների 5-րդ համագումարի կողմից՝ 1918 թվականի հուլիսին։ Դա մի նոր, բարձր տիպի կոնստիտուցիա էր, որը արտահայտում էր ամբողջ աշխատավոր մարդկության կամքը։

Սովետական առաջին Կոնստիտուցիան՝ ՌՍՖՍՌ Կոնստիտուցիան հսկայական նշանակություն ունեցավ ոչ միայն այն ժամանակվա Սովետական Ռուսաստանի պետական ապարատի կազմակերպման և աշխատանքի բարելավման համար, այլև հիմք հանդիսացավ հետագայում կազմակերպված միութենական ռեսպուբլիկաների կոնստիտուցիաների համար։

Սովետական առաջին Կոնստիտուցիան ունեցավ միջազգային հսկայական նշանակություն։ Նրա իսկական դեմոկրատական բովանդակությունը, հստակ ձևակերպումները հսկայական ռևոլյուցիոնացնող

ազդեցություն ունեցան ամբողջ աշխարհի աշխատավորների վրա։

ՍՍՌՄ Սովետների 2-րդ համագումարում ընդունված ՍՍՌՄ Կոնստիտուցիան (1924 թվականի հունվարին) օրենսդրական կարգով ձևակերպեց և ամրապնդեց Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության մեծագույն նվաճումները՝ ՍՍՌՄ կազմակերպումը։

ՍՍՌՄ կազմակերպումը և 1924 թվականի կոնստիտուցիայի ընդունումը հզոր ազդակ հանդիսացավ ժողովուրդների միջև բարեկամության հետագա ամրապնդման, սոցիալիստական ազգերի քաղաքական, տնտեսական և կուլտուրական աճի, սոցիալիզմի հիմքերի կառուցման գործում։

1936 թվականի դեկտեմբերի 5-ին Համամիութենական Սովետների արտակարգ 8-րդ համագումարը հաստատեց ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան, որը օրենսդրականորեն ամրապնդեց սոցիալիզմի համար մղած պայքարում սովետական ժողովրդի մեծագույն նվաճումների արդյունքները։ Հատկապես կենտրոնացրեց ողջ օրենսդրական իշխանությունը մեկ օրգանում, հանձին Գերագույն Սովետի, որին ենթակա են մնացած բոլոր օրգանները։ Նա ճիշտ կերպով սահմանագծեց օրենսդրական և կատարողական



ֆունկցիաները և մտցրեց խիստ սահմանագծում պետական իշխանության բոլոր օրգանների ու պետական կառավարման օրգանների գործունեության մեջ։

ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան ամբողջ աշխարհին ցույց տվեց սոցիալիզմի հսկայական գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ, սովետական հասարակության քաղաքական կազմակերպության և նոր, իսկական սոցիալիստական դեմոկրատիայի մեծագույն առավելությունները։

ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիայի ընդունումից անցած 23 տարիների ընթացքում ՍՍՌՄ դարձել է ավելի հզոր տերություն։ Սոցիալիզմը դուրս է եկել մեկ երկրի շրջանակներից և դարձել հզոր համաշխարհային սիստեմ։

Վ. Ի. Լենինը գրել է, որ «Պրոլետարական դեմոկրատիան միլիոն անգամ ավելի դեմոկրատիկ է ամեն մի բուրժուական դեմոկրատիայից,— Սովետական իշխանությունը միլիոն անգամ ավելի դեմոկրատիկ է ամենադեմոկրատական բուրժուական ռեսպուբլիկայից»։

Սովետական դեմոկրատիայի տնտեսական հիմքը հանդիսանում է տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրու-





թյան գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը, հողը, նրա ընդերքը, ջրերը, անտառները, գործարանները, ֆաբրիկաները և մյուս արտադրության գործիքներն ու միջոցները պատկանում են աշխատավոր ժողովրդին, որոնք հանդիսանում են լիիշխան տերերը իրենց երկրի։

«ՍՍՌՄ-ն բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն է» ասված է Կոնստիտուցիայի առաջին հոդվածում, իսկ 3-րդ հոդվածը հռչակում է, որ «Ամբողջ իշխանությունը ՍՍՌՄ-ում պատկանում է քաղաքի և գյուղի աշխատավորներին, հանձինս աշխատավորների դեպուտատների Սովետների»։ Այդ նշանակում է, որ մեր երկրի աշխատավորները ոչ միայն տեր են արտադրության գործիքների ու միջոցների, այլև ամբողջ լիակատարությամբ տիրում են քաղաքական իշխանությանը։ Մեր երկրում պետական իշխանության բոլոր օրգանները ընտրվում են սովետական ժողովրդի կողմից, աշխատավորների լավագույն ներկայացուցիչներից, իսկական ընդհանուր, հավասար, ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա գաղտնի քվեարկությամբ։ Օրինակ, ՍՍՌՄ պետական իշխանության ներկայումս գործող բարձրագույն օր-



գանի՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի կազմը։ Նրանում ընտրված 1378 դեպուտատներից, 831-ը բանվորներ և գյուղացիներ են, որը կազմում է ամբողջ դեպուտատների 60 տոկոսը, 547-ը աշխատավոր ինտելիգենցիայի ներկայացուցիչներ են։ Դեպուտատների թվում 336-ը կանայք են, 330-ը անպարտիականներ։ ՍՍՌՄ Գերագույն Սովետը իր ազգային կազմով արտացոլում է մեր երկրի բնակչության բազմազգ կազմը, նրանում ներկայացված են ՍՍՌՄ ազգությունների ներկայացուցիչներն անխտիր։

ՍՍՌՄ բոլոր Սովետներում ընտրված են 1 միլիոն 850 հազար դեպուտատներ, Սովետների ընտրությունների ժամանակ նրա աշխատանքներին մասնակցում են մեր երկրում 7—8 միլիոն աշխատավորներ։ Բոլոր Սովետներին կից գործող մոտ 400 հազար մշտական հանձնաժողովներում ընդգրկված են մեկ միլիոնից ավելի դեպուտատ և երկու միլիոն ակտիվիստներ։

ՍՄԿՊ-ն և Սովետական կառավարությունը բոլոր միջոցներով օժանդակում են մասսաների նախաձեռնությանն ու՛լ ավելի բարձրացմանը, երկրի կառավարմանը, գիտության և կուլտուրայի զարգացման գործում։ Դրա փայլուն ապացույցներից մեկը Կոնստիտու-

ցիայի նախագծի համաժողովրդական քննարկումն էր։ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մոտ 6 ամիս տևող համաժողովրդական քննարկումը հանդիսացավ սովետական սոցիալիստական դեմոկրատիայի իսկական հաղթանակը, որն ապահովեց աշխատավոր լայն մասսաների մշտական և անմիջական մասնակցությունը պետության կառավարմանը և պետական առաջնակարգ կարևոր հարցի լուծմանը։ Կոնստիտուցիայի նախագիծը քննարկվեց աշխատավորության 458 հազար 441 ժողովներում, Սովետների և գործկոմների տասնյակ հազար պլենումներում։ Քննարկմանը մասնակցեցին ավելի քան 51,5 միլիոն մարդ, որոնք մտցրին շատ ուղղումներ և լրացումներ կոնստիտուցիայի նախագծի տեքստում։

Այսպիսով սովետական Կոնստիտուցիայի մշակման և հաստատման պրոցեսում հանդես է եկել կոլեկտիվ միտքը և աշխատավորների ու ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների ընդհանուր կամքը։

Սոցիալիստական դեմոկրատիան իր ցայտուն արտացոլումն է գտել նաև բազմազգ Սովետական պետությունում ազգային հարցի լուծման մեջ։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան ջախջախեց Ռու-



սաստանում ազգային ճնշման շղթաները և ընդմիշտ ոչնչացրեց ազգային անհավասարությունը։ Նա հաստատեց բոլոր ազգերի իսկական եղբայրություն և անցյալում ճնշված ազգություններին բարձրացրեց իսկական ազատ և իսկական հավասար ժողովուրդների մակարդակին։ Այդ մեծագույն նվաճումների հիմքում և Սովետական Միության բոլոր ժողովուրդների բարեկամության, սերտ համագործակցության և եղբայրական փոխօգնության հիմքում առկա են այդ ազգությունների էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման հսկայական նվաճումները. օրինակ, Հայկական ՍՍՌ-ն, Հայաստանի աշխատավորները հպարտությամբ են նայում դեպի իրենց անցած ուղին, անցած մոտ 40 տարիների ընթացքում Հայկական ՍՍՌ-ն ամբողջությամբ կերպարանափոխվեց։ Ցարիզմի երբեմնի կիսագաղութը, որը հայ ժողովրդի դահիճ դաշնակցականների օրոք հասել էր կործանման, դարձել է առաջավոր ինդուստրիալ-կոլտնտեսային գյուղատնտեսության, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական ծաղկող կուլտուրայի երկիր։ Չտեսնված չափերի է հասել Հայկական ՍՍՌ-ում

գիտության, կուլտուրայի, արվեստի, գրականության զարգացումը։

Վերածնված և իր պետականությունն ունեցող հայ ժողովուրդը անցած մոտ 40 տարիների ընթացքում տնտեսական և կուլտուրական բնագավառի հոյակապ նվաճումները ձեռք է բերել ՍՄԿՊ իմաստուն ազգային քաղաքականության շնորհիվ։ Այդ նվաճումները խոշոր չափերի կհասնեն առաջիկա տարիների ընթացքում, որովհետև ըստ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի Հայկական ՍՍՌ-ում 7-ամյակում կապիտալ ներդրումների ծավալը կկազմի 12,5 միլիարդ ռուբլի։ Որպեսզի պարզ լինի այդ գումարի մեծությունը, բավական է ասել, որ այն 800 միլիոն ռուբլով ավելի է, քան Սովետական Հայաստանում անցած 38 տարիների ընթացքում իրացված կապիտալ ներդրումների գումարը։

Ինչպես իր ելույթներից մեկում ընկ. Ն. Ս. Խրուշչովը ասաց, որ բանը ամենևին նրանում չէ, որ մենք՝ ռուսները, ուկրաինացիները, բելոռուսները, ղազախները, ուզբեկները, վրացիները, հայերը, Միջին Ասիայի և Մերձբալթիկայի, ՍՍՌՄ-ի Հարավի և Հյուսիսի ժողովուրդները տեր ենք ինչ որ



բացառիկ առանձնահատկությունների․ գործը նրանումն է, որ հատկապես մեր սովետական կարգը, սոցիալիստական կարգը ըստեղծում է այդպիսի պայմաններ ժողովրդի համար, որում նա կարող է լիովին զարգացնել իր ստեղծագործական ուժերը և ցույց տալ թե ինչին ընդունակ է ազատ մարդը, որը չգիտի շահագործման հոգեկան բեռը և հանդիսանում է իր երկրի իսկական տերը։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան բնորոշ է իր մինչև վերջը հետևողական դեմոկրատիզմով, որը չունի վերապահումներ և սահմանափակումներ։ Նրա համար գոյություն չունեն ակտիվ կամ պասսիվ քաղաքացիներ։ Նա տարբերություն չի դնում տղամարդկանց ու կանանց միջև։ Նրա համար բոլոր քաղաքացիները իրենց իրավունքներով հավասար են։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան չի բավարարվում քաղաքացիներին միայն դեմոկրատական իրավունքներ և ազատություններ տրամադրելով, այլ ծանրության կենտրոնը փոխադրում է այդ իրավունքների և ազատությունների կենսագործման հարցի վրա։ Կոնստիտուցիան ոչ միայն հռչակում է քաղաքացիների իրավունքների հավասարություն, այլև գործնականում ապահովում է այն, օրենսդրա-

կան կարգով վավերացնելով շահագործողական ռեժիմից սովետական մարդկանց ազատագրվելու փաստը։ Կոնստիտուցիան ոչ թե սոսկ հռչակում է աշխատանքի իրավունք, այլև նշում է, որ այդ իրավունքն ապահովվում է ժողովրդական տնտեսության սոցիալիստական կազմակերպումով, սովետական հասարակության արտադրողական ուժերի անշեղ աճումով և այլն։ Նա ոչ միայն հռչակում է դեմոկրատական ազատություններ, այլև օրենսդրական կարգով դրանք ապահովվում է նյութական միջոցներով։ Մեր երկրում ոչ ոքի չի անհանգստացնում գործազրկությունը։ ՍՍՌՄ-ում ոչ թե մարդն է աշխատանք որոնում, այլ աշխատանքն է որոնում մարդուն։

Սովետական քաղաքացուն հրճվանք է պատճառում ՍՄԿՊ Կենտկոմի, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀԱՄԿԽ-ի կողմից ընդունված որոշումը բանվորներին ու ծառայողներին կրճատ աշխատանքային օրվա փոխադրելն ու նրանց աշխատավարձի կարգավորումն ավարտելու ժամկետների մասին։ Այդ որոշմամբ նոր և կարևոր էտապ է բացվում ՍՍՌՄ-ում իրականացնելու աշխարհում ամենակարճ բանվորական օրը։ Արդեն 1964 թվականին մեզ մոտ կսկսվի ի-



րագործվել բանվորների և ծառայողների անցումը 6-ժամյա բանվորական օրվա, իսկ հանքափորների և մի քանի ուրիշ պրոֆեսիայի բանվորների համար 5-ժամյա բանվորական օրվա։

Սովետական քաղաքացիները լայնորեն օգտագործում են կրթության իրավունքը, ավելի քան 50 միլիոն մարդ, այսինքը ՍՍՌՄ ամբողջ բնակչության 1/4 մասից ավելին այս կամ այն ձևով սովորում են, բարձրացնելով իրենց կրթությունը, որակավորումը և ընդհանուր կուլտուրական մակարդակը։ Ուսուցումը բոլոր տիպի ուսումնական հաստատություններում ձրի է։ Կրթության սովետական սիստեմը ցույց տվեց իր արժանիքները և գերազանցությունը։ Սովետական գիտնականները, ինժեներները, տեխնիկները ու բանվորներն էին, որ աշխարհը զարմացրին երկրի առաջին արհեստական արբանյակներով։ Սովետական «Սպուտնիկ» և «Լունիկ» բառերը ամբողջ աշխարհում հասկանալի են առանց թարգմանության։

Բոլոր քաղաքացիների համար լայնորեն ապահովված է հանգստի իրավունքը, նախատոնական և շաբաթ օրերին բանվորական օրը կրճատված է 2-ական ժամով, ստեղծված են հրաշալի սանատորիաների, հան-

գստյան տների, ակումբների և այլն լայն ցանց։

ՍՍՌՄ քաղաքացիներն լայնորեն օգտվում են նյութական ապահովության իրավունքից, ինչպես ծերության, նույնպես և հիվանդության ու աշխատունակությունը կորցնելու դեպքում։ Մեր երկրում, երբ մարդը հիվանդ է ու չի աշխատում, նրա աշխատավարձը պահպանվում է. երբ ծերանում է, նա իրեն չի համարում ավելորդ, նրա համար ապահովված է պետական կենսաթոշակ։

Ըստ որում պետությունը, կոլտնտեսությունները և հասարակական կազմակերպությունները ապահովում են մոտ 20 միլիոն կենսաթոշակառուների։ Մանկապարտեզներում, մանկամսուրներում և մանկատներում գտնվում են 5 միլիոն երեխաներ։ Բարձրագույն ու միջնակարգ հաստատությունների 3 միլիոն 300 հազար ուսանողներ, աշխատանքային ռեզերվների դպրոցների, ուսումնարանների սովորողներ ապահովված են պետական թոշակներով ու հանրակացարաններով։ Գիշերօթիկ դպրոցների սովորողները ամբողջովին ապահովված են պետության կողմից։ Ամեն տարի 5 միլիոն 600 հազար երեխաներ հանգստանում են պիոներական ճամբարներում, դպրոցա-



կան ամառային հրապարակներում և էքսկուրսիոն տուրիստական բազաներում։ Ավելի քան 3 միլիոն բանվորներ, ծառայողներ և կոլտնտեսականներ ամեն տարի սանատորիաներում և հանգստյան տներում բուժվում և հանգստանում են սոցիալական ապահովագրության և կոլտնտեսությունների միջոցների հաշվին։ Բացի դրանից, պետությունից նպաստներ են ստանում մոտ 7 միլիոն բազմազավակ և միայնակ մայրեր։ Այդ բոլորի հետ մոտակա ժամանակներում Սովետական պետությունը կհրաժարվի բնակչությունից որևէ հարկ գանձելուց։ Կա՞րող է նման բան գոյություն ունենալ բուրժուական երկրներում. Թող որևէ բուրժուական երկիր փորձի կատարել նման բան։ ԱՄՆ-ում իր այցելության ժամանակ Ն. Ս. Խրուշչովը հանդես գալով ամերիկյան հեռուստատեսությամբ, 1959 թվականի սեպտեմբերի 27-ին, ասաց, որ «Մեր ժողովուրդը այսօր ավելի լավ կապրեր, եթե մենք 40 տարուց գրեթե 20 տարին չկորցնեինք մեզ պարտադրված պատերազմների և ժողովրդական տնտեսության ետպատերազմյան վերականգնման վրա։ ...Եթե չլինեին այդ ահավոր ավերածություններն ու կորուստները, մենք հավանաբար արդեն հասած կլի-

նեինք Ամերիկայի Միացյալ Նահանգներին թե՛ արտադրության չափերով և թե՛ բնակչության կենսամակարդակով»:

Սովետական դեմոկրատիայի հետագա զարգացման և կատարելագործման հարցերը մեր երկրում կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում իրենց խորը և տեսական վերլուծությունը ստացան Ն. Ս. Խրուշչովի ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցման մեջ և այդ համագումարի պատմական որոշումներում:

Կոմունիստական պարտիայի ղեկավարության մեջ է խարսխված մեր պետության ուժի աղբյուրը և անհաղթելիությունը:

---



# ՆՈՐԱՐԱՐՆԵՐԸ

## Հ. ՍԻՄՈՆՅԱՆ

Սովետական մարդիկ հայրենասիրական վեհ ձգտումներով համակված կենսագործում են հարազատ Կոմունիստական պարտիայի XXI համագումարի որոշումները: Համաժողովրդական այդ պայքարում իրենց ավանդն են մտցնում նաև Երևանի Ալյումինի գործարանի բանվորներն ու ինժեներատեխնիկական աշխատողները, որոնք արտադրական բարձր ցուցանիշներով են փակում 1959 թվականը:

Ալյումինագործների կոլեկտիվն այժմ պայքարում է պլանից դուրս երկրին տալ տասնյակ տոննաներ բարձրորակ մետաղ, ավելացնել արտապլանային կուտակումները, արտադրական և տեխնոլոգիական պրոցեսները ենթարկել կոմպլեքսային ավտոմատացման և մեքենայացման:

Այդ ուղղությամբ շնորհակալ գործ են կատարում արտադրության նորարարները, ռացիոնալիզատորներն ու գյուտարարները:

Նրանց ստեղծագործական միտքը միշտ ուղղված է դեպի նորը, առաջավորը։ Լաբորատորիայի և գազամաքրման ցեխի կոլեկտիվների աջակցությամբ այս տարի մեծ աշխատանք տարվեց գազամաքրման սարքավորումների վերակառուցման ուղղությամբ։ Այժմ նրանք Մոսկվայի և Լենինգրադի մասնագիտացված գիտահետազոտական ինստիտուտների հետ միասին աշխատանքներ են տանում այդ պրոցեսների վերջնական ուսումնասիրության ինտենսիֆիկացման ուղղությամբ։ Շուտով կավարտվեն այդ ուսումնասիրությունները և ստացված տվյալների հիման վրա Միության ալյումինի բոլոր գործարաններում կկառուցվեն գազամաքրման նույնատիպ սարքեր։

Առանձնակի ուշադրության է արժանի ինժեներ տեխնոլոգներ Մ. Աղաբաբյանի և Պ. Սահակյանի կողմից մշակված էլեկտրոլիզի պրոցեսի կոմպլեքսային ավտոմատացման ուղղությամբ կատարված նորարարությունը։ Նրանց ջանքերով ստեղծվել և արդեն աշխատում է այսպես կոչված փորձնական «հերմետիկ վաննան», որը հեշտացնում է կավահողից ալյումին ստանալու պրոցեսը։

Գործարանի լաբորատորիային կից ըս-



տեղծվել է ավտոմատիկայի խումբ, որը «Հայէլեկտրո» գործարանին կից գիտահետազոտական ֆիլիալի աշխատողների հետ միասին կատարում է այդ դժվարին ու պատասխանատու գործը։

Ալյումինագործները գովեստով են խոսում նորարարներ Մ. Աղաբաբյանի, Հ. Փայտյանի, Գ. Թոքմաջյանի, Պ. Սահակյանի, Ս. Մխիթարյանի և շատ ուրիշների մասին։ Նրանց աշխատանքի առաջավոր մեթոդները արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու, աշխատատար պրոցեսները ավտոմատացման ու մեքենայացման ենթարկելու արժեքավոր առաջարկությունները մեծ ավանդ են յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում։ Ահա թե ինչու նորարարների յուրաքանչյուր առաջարկություն ջերմ պաշտպանության է արժանանում գործարանում։

Ինժեներ տեխնոլոգներ Մ. Աղաբաբյանի և Պ. Սահակյանի առաջարկով զգալի բարեփոխություն մտցվեց էլեկտրոլիզի վաննայի կառուցվածքի մեջ։ Դեֆիցիտային թանկ նյութերը փոխարինվեցին էժան, արտադրության թափուկներից ստացվող նյութերով։ Այս առաջարկության արմատավորումը ող

միայն երկարացնում է վաննայի օգտագործման ժամանակամիջոցը, այլև հնարավորություն է տալիս տարեկան խնայելու տասնյակ հազար ռուբլի։ Նորարար Պ. Սահակյանը լուրջ փոփոխություն է մտցրել էլեկտրոլիզի պրոցեսների տեխնոլոգիայում։ Նրա առաջարկությամբ այժմ մետաղի մաքրումը կատարվում է անմիջապես վաննայում։ Տեխնոլոգիան վարելու այս մեթոդի շնորհիվ հեշտացվում է բանվորների աշխատանքը, վերացվում են կորուստները, տարեկան տնտեսվում է 250 հազար ռուբլի։

Նորարարներն իրենց որոնող միտքն ուղղել են արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործմանը, նոր տեխնիկայի, առաջավոր փորձի արմատավորմանը։ Եվ պատահական չէ, որ Գ. Թոքմաչյանի, Մ. Աղաբաբյանի և Մ. Մարգարյանի աչքից չվրիպեց այն անտնտեսվարությունը, որ թույլ էր տրվել գազամաքրման ցեխի նախագծման և մոնտաժման ժամանակ։ Ըստ այդ նախագծի արտադրության թափուկները չէր օգտագործվում։ Նորարարական փոփոխություններ մտցնելուց հետո թափուկներից ստացվում է էլեկտրոլիզի ցեխի համար կարևոր հումք, որը գործարա-



նին տարեկան 100 հազար ռուբլի տնտեսում է տալիս։

Ինժեներ-մեխանիկ Ս. Մխիթարյանին շարունակ մտահոգում էր այն միտքը, թե արդյոք հնարավոր չէ մեքենայացնել պատրաստի արտադրանքի փոխադրման և վագոնների բարձման աշխատանքը։ Եվ այդ նրան հաջողվեց։ Մխիթարյանի առաջարկով պատրաստվեց մի սարքավորում, որի շնորհիվ բանվորների աշխատանքը մի քանի անգամ թեթևանում է և կրճատվում մի շարք արտադրական պրոցեսներ։

Այս տարի գործարանի բանվորները և ինժեներա-տեխնիկական աշխատողները արել են ավելի քան 350 նորարարական առաջարկություն, որից արտադրության մեջ արմատավորվել է 120-ը։ Նորարարական առաջարկություններից գործարանը կես միլիոն ռուբլու տնտեսում է ունեցել։ Շատ արժեքավոր առաջարկություններ գտնվում են արտադրության մեջ, ներդրման պրոցեսում։

Գործարանում ռացիոնալիզատորական աշխատանքին մեծ թափ հաղորդեց տեխնիկական պրոգրեսի միամսյակ հայտարարելը, որի ընթացքում արտադրության մեջ արմատավորվեց նորարարական ավելի քան 30 առաջարկություն։

Արտադրության ավտոմատացման և մեքենայացման տարբեր բնագավառների համար կազմվել է նորարարների կոմպլեքսային բրիգադաներ, նշանակվել են ղեկավարներ, նշվել են նրանց կատարելիք առաջնահերթ հարցերը։ Կոմպլեքսային բրիգադաներին և ընդհանրապես ռացիոնալիզատորներին մեծ օգնություն է կազմակերպում կոնստրուկտորական բաժինը և մեխանիկական ցեխի փորձնական տեղամասը։

Ալյումինագործների կոլեկտիվը պարտիական կազմակերպության ղեկավարությամբ կենսագործում է յոթնամյա պլանի առաջին տարվա խնդիրները։ Այժմ գործարանի երիտասարդ կոլեկտիվը նոր, ավելի բարձր պարտավորություններ է ստանձնել Հայաստանի կոմպարտիայի XXI համագումարը նոր հաջողություններով դիմավորելու համար։

---



# ՀԵԿՏԱՐԻՑ 220 ՑԵՆՏՆԵՐ Խ Ա Ղ Ո Ղ

Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսության նախագահ

Մեր կոլտնտեսության այգեգործները տարեցտարի ավելացնում են խաղողի համախառն բերքը, հիմնում նոր այգիներ։ Նրանք, վերջին տարիներին հիմնել են 45 հեկտար խաղողի այգի, որոնց մի մասն արդեն պտղաբերում է։ Քաղցրաշենցիները չորրորդ տարին է, ինչ ստացած բարձր բերքով շրջանում ոչ ոքի չեն զիջում իրենց առաջնությունը։ 1957 թվականին, չնայած կարկտահարությանը, բերքատու այգիների հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 118,4 ցենտներ՝ արտադրական պլանով նախատեսված 100 ցենտների փոխարեն։ 1958 թվականին ավելի ամրապնդվեցին հաջողությունները։ Հեկտարի միջին բերքատվությունը հասավ 147 ցենտների։ Այս տարի յոթնամյակի առաջին տարում, քաղցրաշեն-

ցիները հասան խաղողի բերքատվության ռեկորդային ցուցանիշի։ Նրանք խաղողի այգու ամեն մի հեկտարից ստացան 220 ցենտներ միջին բերք, նախատեսված պատ-շաճ պլանը գերակատարելով 90 ցենտներով։

Ինչպե՞ս են քաղցրաշենցիները խաղողի բարձր բերք ստանում։

Գյուղատնտեսական բոլոր կուլտուրանե-րը, այգին առանձնապես, հարատև ու հո-գատար խնամք են պահանջում։ Ինչպես ժո-ղովուրդն է ասում ձեռքդ չպետք է հեռաց-նես վազից ու թփից։ Չպետք է խախտես մշակության լավագույն ժամկետները։ Երբ դրանք խախտվում են, կամ աշխատանքնե-րից որևէ մեկը լրիվ ու որակով չի կատար-վում, այդ դեպքում այգուց առատ բերք մի սպասի։

Մեր կոլտնտեսության այգեգործները տա-րիներ շարունակ բարելավում են այգիների մշակությունը և դրա շնորհիվ միշտ բարձր բերք ստանում։

Ինչպես նախորդ, այնպես էլ այս տարի, հետևելով երկրի առաջավոր այգեգործների օրինակին, այգիների բոլոր մշակությունне-րը կատարել ենք ժամանակին, ագրոտեխ-նիկական բարձր մակարդակով։ Այգեբացը կատարեցինք վաղ գարնանը, մարտ ամսի



սկզբներին, ձյունը հալվելուն պես։ Այդ աշ-խատանքն ավարտեցինք ընդամենը 5 օրում։ Մեր յուրաքանչյուր այգեգործ հետևում է, որ այգեբացի ընթացքում վազերը չվնասվեն։ Այգեբացից անմիջապես հետո սկսում ենք էտը, որը որպես կարևոր և պատասխա-նատու աշխատանք, կատարում են մեր փորձված այգեգործները։ Ունենք մոտ 50 հմուտ էտվորներ, որոնք լավ ծանոթ են ագ-րոտեխնիկային, գիտեն յուրաքանչյուր վա-զի առանձնահատկությունը։ Մենք, բոլոր միջոցները գործադրում ենք, որ էտն ա-վարտվի ապրիլի առաջին օրերին՝ այսինքը մինչև բողբոջների ուռչելը։ Այս տարի մեր կոլտնտեսությունում էտն ավարտվեց աշ-խատանքային 18—20 օրում։

Մեր էտվորները ամեն մի վազի նկատ-մամբ առանձին մոտեցում են ունենում։ Ել-նելով տարիների փորձից, լավ զարգացած մատերը կտրում են երկար, իսկ թույլ զար-գացածները՝ կարճ։ Օրինակ՝ Կախեթի սոր-տի խաղողի ամեն մի մատի վրա թողնում ենք 4—5 աչք։ Էտի ժամանակ հեռացվում են շարքից դուրս եկած թևերը, հին, ինչպես նաև վազի բնի վրա եղած կոճղերը, փթած մասերը և այլն։ Էտի ժամանակ հավաքում ու առանձնացնում ենք արժեքավոր կտրոն-

*ները՝ նոր այգիներ տնկելու համար։ Ետից անմիջապես հետո այգիներից դուրս ենք բերում արքատը։*

*Ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում ենք կատարում այգեփորը։ Իբրև կանոն այն ավարտում ենք ապրիլ ամսի վերջերին։ Այդ կարևոր աշխատանքը ժամանակին ավարտելու համար, մենք փորի առաջին օրից լրիվ մոբիլիզացնում ենք կոլտնտեսականների ուժերը։ Փորելու ընթացքում լրիվ բացում ենք վազերի բները, այնտեղից հեռացնում ավելորդ, փթած ու չորացած մասերը, ինչպես նաև մակերեսային արմատներն ու կոճղերը։ Այսպիսով, վազը լրիվ ազատում ենք ավելորդ ու անպետք մասերից։*

*Միայն այսքանով չէ, որ մենք սահմանափակվում ենք։ Լուրջ ուշադրություն ենք դարձնում նաև այգիների պարարտացմանը։ Ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում ու սահմանված նորմաներով հողի մեջ ենք մտցնում օրգանական և հանքային պարարտանյութեր։ Մայիս ամսին, այգիների առաջին կանաչ հատումից հետո, սկսում ենք համատարած սնուցումը։ Հիմնական պարարտացումների և սնուցման ժամանակ ամեն մի հեկտար այգուն տալիս ենք 250—300 կիլոգրամ ամոնիակային սելիտրա, 700-*



*800 կիլոգրամ սուպերֆոսֆատ և 200 կիլոգրամ կալիումական աղ։ Լավ արդյունք է ստացվում, երբ պարարտանյութերը հողի մեջ ենք մտցնում իրար հետ խառնած վիճակում։ Այգիները պարարտացնելու համար օգտագործում ենք նաև գոմաղբ, ամեն մի հեկտարին տալով 25—30 տոննա։*

*Որպեսզի այգիների սնուցումը ավելի արդյունավետ լինի 20 սմ. խորությամբ բաց ենք անում վազերի բները, այնտեղ լցնում կես կիլոգրամ խառը պարարտանյութ։ Իհարկե, պարարտանյութերի այդ նորման բոլոր այգիներում ու բներում նույնությամբ չի պահպանվում։ Մենք անպայման հաշվի ենք առնում վազի ու հողի պահանջը և ելնում նրա սորտային առանձնահատկություններից, թույլ վազերին ավելի շատ, իսկ ուժեղ վազերին ավելի քիչ պարարտանյութ ենք տալիս։*

*Այգեփորն ավարտելուց անմիջապես հետո, մոտավորապես մայիս ամսի սկզբներին, ձեռնամուխ ենք լինում բուժման աշխատանքներին։ Միլդիուի դեմ սրսկումներ կատարում ենք բորդոյան հեղուկով։ Այն կրկնում ենք մի քանի անգամ։ Հետևում ենք, որ սրսկումները կատարվեն որակով ու մեծ*

խնամքով, այնպես, որ սրսկվող հեղուկը մանր կաթիլներով նստի տերևների երկու երեսների վրա։ Հաջող պայքարի շնորհիվ վերջին տարիներին միլդիու հիվանդությունը գրեթե կանխվել է։ Հունիս ամսին այգիները փոշոտում ենք ծծումբով, որը պայքարի լավագույն միջոց է օիդիում հիվանդության դեմ։ Այդ պայքարը կրկնում ենք մի քանի անգամ։

Մեծ նշանակություն ենք տալիս այգիների քաղհանի աշխատանքներին, որը տարվա ընթացքում կատարում ենք մի քանի անգամ, վազերի ծաղկելուց առաջ և պտղակալելուց 2—3 շաբաթ հետո։ Բոլոր միջոցները գործադրում ենք, որ այգիները, նախքան այգեկութը, գտնվեն մոլախոտերից մաքուր վիճակում։ Եվ այդ տալիս է իր մեծ արդյունքը։

Վազերի հենակավորումը կարևոր ագրոձեռնարկումներից մեկն է։ Ամեն տարի գարնանը, դեռ այգեփորի ժամանակ, սկսում և ավարտում ենք այդ աշխատանքը։ Մոտավորապես մայիս և հունիս ամիսներին մեկ անգամ ևս ստուգում ենք հենակների վիճակը և անհրաժեշտության դեպքում նոր լրացումներ կատարում, միաժամանակ ուղղում վայր ընկած հենակները։



Վերը նշված աշխատանքներից բացի, առնվազն 2 անգամ, կատարում ենք այգիների կանաչ հատումներ՝ հեռացնելով վազերից ավելորդ շիվերը։ Ոռոգումները կատարում ենք ելնելով հողի ու բույսի պահանջից։

Մենք, հատկապես վերջին տարիներում, զգալի աշխատանք ենք կատարել հին այգիները երիտասարդացնելու, թմբի բաց տեղերը լրացնելու ու լիարժեք դարձնելու ուղղությամբ։ Հին այգիներում կիրառում ենք անդալիսի, իսկ նորերում՝ արմատակալած վազեր տնկելու եղանակը։ Վերացրել ենք հին ու նոր այգիների միջնակները և ազատ տարածությունները, հավասարացրել ենք փոսերն ու խորդուբորդությունները։ Այժմ մեր այգիները գրեթե ամբողջովին լիարժեք են, ամեն մի հեկտարում ունենք 2200—2500 բերքատու վազ։

Մեր կոլտնտեսությունը ավելի լավ աշխատեց հատկապես այս տարի։ Հարազատ պարտիայի Կենտկոմի առաջիկա պլենումի պատվին ծավալված համաժողովրդական մրցությունը է՛լ ավելի ոգեշնչեց մեր աշխատավորներին։ Հաշվի առնելով ունեցած մեծ հնարավորությունները, մենք բերքահավաքի նախօրյակին վերանայեցինք դեռ գարնանը նախատեսած ցուցանիշները և որոշեցինք՝ 86

հեկտար բերքատու այգիների հեկտարի միջին բերքատվությունը հասցնել 200 ցենտների՝ նախատեսնված 130-ի փոխարեն։ Մեր խոսքը գործից չտարբերվեց։ Միջինը ամեն մի հեկտարից ստացանք 220 ցենտներ։ Այդ մեր կոլտնտեսականների լավ աշխատանքի արդյունքն էր։ Մենք այս տարի միայն այգեգործությունից մոտ հինգ միլիոն ռուբլի եկամուտ ենք ստանում։

Մեր կոլտնտեսությունը աչքի է ընկնում իր հմուտ այգեգործներով։ Ահա դրանցից են՝ բրիգադիր Մանուկ Վարդանյանը, որն այս տարի 13,5 հեկտար այգու հեկտարի միջին բերքատվությունը հասցրեց 248 ցենտների, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Նոյեմ Եղիազարյանը, Լիպարիտ Թևոսյանը, Նշան Սասունյանը, Իսաջան Եղիազարյանը, Վարդան Հակոբյանը և շատ ուրիշներ։

Մենք չենք հանգստանա ձեռք բերած հաջողություններով։ Է՛լ ավելի կլարենք մեր ուժերը՝ յոթնամյա պլանը բոլոր գծերով ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Կոմունիստական պարտիան անդադրում հոգ է տանում ժողովրդի բարօրության համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Կոմունիստական պարտիայի դերի մասին, *Երկեր, հատոր 31, էջ 283—289, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), Հայպետհրատ, 1953։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ղեկավար և կազմակերպող ուժն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում, *ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1959։*

Պարտիայի ղեկավարությամբ դեպի կոմունիզմի ճանապարհը, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 31-ի համարում։

## 2. Նոր հաջողություններով դիմավորենք ՍՄԿՊ կենտկոմի առաջիկա պլենումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեում, *որոշում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հերթական պլենում հրավիրելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 11-ի համարում։*

ՍՄԿՊ կենտկոմի պլենումին ընդառաջ, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 14-ի առաջնորդողը։*

*Նոր գործերով նշանավորենք ՍՄԿՊ կենտկոմի առաջիկա պլենումը, գրույց տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1959 թվականի 21-րդ համարում։*

## 3. Անթերի կատարենք ստանձնած պարտավորությունները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայաստանի Կոմպարտիայի կենտկոմի պլենումի ԲԱՆԱՁԵՎԸ 1959 թվականին կոլտնտեսությունների և սովխոզների կողմից ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքի մասին, *ՀԿՊ Արտաշատի,*



*Մարտունու և Իջևանի շրջկոմների զեկուցումների առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 27-ի համարում։*

Հաջողությամբ կատարենք յոթնամյակի առաջին տարվա պլանները, *նյութեր արտադրական պլանները բարձր ցուցանիշներով կատարելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 12-ի համարում։*

## 4. Ավելի շատ բամբակ երկրին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կրկնապատկել բերքահավաքի տեմպերը *«Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 25-ի առաջնորդողը։*

Մ. ԱԴՈՆՑ— Վճռական տասնօրյակ, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 3-ի համարում։*

Վճռական թափ հաղորդել բամբակի բերքահավաքին, *նյութեր բամբակագործների կողմից ստանձնած պարտավորությունները կատարելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 21-ի համարում։*

Առաջին տոննաները, *հոդված բամբակը ժամանակին և անկորուստ հավաքելու մասին, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1959 թվականի 10-րդ համարում։*

## 5. Ապահովենք անասունների կուշտ և տաք ձմեռումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ժամանակին և բազմակողմանիորեն նախապատրաստվել ձմռանը, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 22-ի առաջնորդողը։*

Բարձրացնենք անասնաբուծության մթերատվությունը, լիովին կատարենք սոցիալիստական պարտավորությունները, *նյութեր առաջավոր անասնապահների աշխատանքի մասին։*

Անասնաբուծության զարգացման գլխավոր պայմանը, *հոդված տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1959 թվականի 10-րդ համարում։*

## 6. Մեր ռեսպուբլիկայի էներգետիկ տնտեսության զարգացումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ.— Ճառ Արարբեկյանգէսի բացմանը նվիրված միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 6-ի համարում։*

Շարք մտավ Արարբեկյան հիդրոէլեկտրակայանը, *նյութեր Հրազդանում տեղի ունեցած միտինգի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 6-ի համարում։*



Անում ու ճզորանում է մեր ռեսպուբլիկայի էներգետիկ բազան, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 5-ի համարում։*

Արարբեկյանգէսի շինարարների ճաղթանակը, *նյութեր Արարբեկյանգէսի կառուցման վերաբերյալ, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 5-ի համարում։*

## 7. Ժուռնալիստների համամիութենական առաջին համագումարը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական ժուռնալիստների համամիութենական առաջին համագումարին, *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ողջույնը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 13-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Սովետական մամուլը պետք է լինի ամենաուժեղ և ամենամարտական մամուլը, *ելույթ սովետական ժուռնալիստների ընդունելության Կրեմլում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 18-ի համարում։*

Ժուռնալիստների Համամիութենական առաջին համագումարի բացումը, *ինֆորմացիա, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 13-ի համարում։*

Սովետական ժուռնալիստների համամիութենական առաջին համագումարը, ՏԱՍՍ-ի հաղորդագրությունը համագումարի աշխատանքների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 14-ի, 15-ի համարներում։

Ավելի համարձակորեն թափանցել կյանքի մեջ, «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 12-ի առաջնորդողը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, ողջույնի հեռագիր ընդունված ժուռնալիստների առաջին Համամիութենական համագումարի կողմից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 15-ի համարում։

## 8. Խաղաղ գոյակցությունը կյանքի հրամայական պահանջն է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական Միության Միջազգային դրության և արտաքին քաղաքականության մասին, զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ նստաշրջանում, 1959 թվականի հոկտեմբերի 31-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 1-ի համարում։





Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի դիմումը աշխարհի բոլոր երկրների պառլամենտներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 1-ի համարում։

Կյանքի հրամայական պահանջը, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 3-ի համարում։

Ա. Բ. ԱՐԻՍՏՈՎ— Խաղաղության և ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարների հաղթանակը, Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 7-ի համարում։

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

**ԲԱՑՎԱԾ Է**
**«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի**
**1960 ԹՎԱԿԱՆԻ**
**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ**

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

*1 ամիսը— 1 ռ. 50 կ.*

*6 ամիսը— 9 ռ.*

*12 ամիսը— 18 ռ.*

*Մեկ համարը 75 կոպեկ*

*ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ*


**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 22 1959 г.**

ՎՖ 08248 Պատվեր 763 Տիրաժ 8550

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.